Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, 11 հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 35-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Երեսունհինգ տարի առաջ, 1920 թվականի նոյեմբերի 29-ին, Հայաստանի աշխատավորները համախմբված Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթական դրոշի ներքո, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ և ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ տապալեցին անգլո-ամերիկյան իմպերիալիստների ստոր գործակալների, հայ ժողովրդի ամենաոխերիմ թշնամիների՝ դաշնակների արյունոտ լուծը և երկրում հաստատեցին սովետական կարգեր։

Հայաստանում Սովետական իշխանության հաստատումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հերթական հաղթանակներից էր։ Սովետական Հայաստանը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ծնունդն է, նրա զավակը։ Այդ մեծ հաղթանակի շնորհիվ բազմաչարչար հայ ժողովուրդը փրկվեց ֆիզիկական բնաջնջման վտանգից, շահագործողների դաժան տիրապետությունից և ազ-





գային վերածննդի, ազատ ու երջանիկ կյանքի կառուցման հնարավորություն ստացավ։

Հայ ժողովրդի ազատագրության կապակցությամբ Մեծ Լենինը գրում էր.

«Ողջունում եմ իմպերիալիզմի լծից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»։ Նույն օրերին Ի. Վ. Ստալինը գրում էր. «Տանջված ու բազմաչարչար, Անտանտայի ու դաշնակների ողորմածությամբ սովի, քայքայման ու գաղթի մատնված Հայաստանը,— բոլոր «բարեկամների» կողմից խաբված այդ Հայաստանը այժմ իր փրկությունը գտավ այն բանի մեջ, որ իրեն հայտարարեց սովետական երկիր։

... Միայն Սովետական իշխանության գաղափարը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն»։

Սովետական ժողովուրդների համերաշխ ընտանիքում, Կոմունիստական պարտիայի լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության շնորհիվ, Հայաստանն անցած 35 տարիների ընթացքում աղքատ երկրից դարձավ առաջավոր ինդուստրիալ-կոլտնտեսային սոցիալիստական ռեսպուբլիկա՝ իր ծաղկուն, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայով։ Այսօր տընտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառ-



ներում ձեռք բերած վիթխարի նվաճումներով է հայ ժողովուրդը նշում իր փառապանծ հաղթանակի 35-րդ տարեդարձը։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում բուռն թափով զարգացավ արդյունաբերությունը, հատկապես՝ ծանր արդյունաբերությունը։

Ռեսպուբլիկայում ստեղծվել են առաջավոր տեխնիկայով հագեցված էներգետիկ, մետալուրգիական, քիմիական, մեքենաշինական, լեռնահանքային, շինանյութերի, տեքստիլ-տրիկոտաժի, սննդի և արդյունաբերության բազմաթիվ այլ ճյուղեր։ Հայաստանի արդյունաբերությունը, որն ըստ էության ստեղծվել է Սովետական իշխանության տարիներին, առանձնապես ուժեղ կերպով զարգացավ հետպատերազմյան տարիներին։ Այդ ժամանակամիջոցում կառուցվել և շահագործման են հանձնվել 65 նոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, այդ թվում՝ Կանազը, Գյումուշի, Սևանի և Ջրաձորի հիդրոէլեկտրակայանները, Կաբելի գործարանը, Մետաղյա ամանեղենի, Կոնյակի, Արզնու ապակյա տարայի, էլեկտրալամպերի, Արարատի ավտոշիֆերի, Թումանյանի հրակայուն աղյուսի գործարանները, Երևանի բրդյա նուրբ գործվածքեղենի կոմբի-

նատը, Լենինի անվան մետաքսագործվածքային ֆաբրիկան և այլ ձեռնարկություններ։ Միայն 1954 թվականին յուրացվեց 150 նոր տեսակի արտադրանք։ Ներկայումս ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններն արտադրում են պղինձ, ալյումին, սինթետիկ կաուչուկ, պղնձարջասպ, ավտոդողեր, գեներատորներ, տրանսֆորմատորներ, կոմպրեսորներ, մետաղահատ հաստոցներ, պարարտանյութեր, շինանյութեր, կաբելային իրեր, հիդրոտուրբիններ, էլեկտրաչափիչ գործիքներ, էլեկտրալամպեր, ավտոմոբիլային և տրակտորային մասեր, հրակայուն աղյուս, բրդյա, մետաքսյա և բամբակյա կտորեղեն, կոշկեղեն, պարենային բազմազան ապրանքներ և արտադրանքի բազմաթիվ այլ տեսակներ։

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1954 թվականին, համեմատական գներով, 89 անգամ ավելի արտադրանք է տվել, քան 1953 թվականին և 1.082 անգամ ավելի, քան 1919 թվականին։ Հայաստանի արդյունաբերության արտադրանքը անընդհատ աճում է։ Մեր արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը 1950 թվականի համեմատությամբ, 1954 թվականին աճել է 79,4 տոկոսով, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝



4,5 անգամ։ Արդյունաբերական արտադրանքի թողարկման 1955 թվականի առաջին կիսամյակի պլանը կատարվել է 105 տոկոսով։ 1954 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է 14 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 9 տոկոսով։ Հնգամյակի եզրափակիչ տարում արդյունաբերական արտադրանքի ծավալը 1950 թվականի մակարդակը կգերազանցի մոտ երկու անգամ։ 1955 թվականին ռեսպուբլիկան, համեմատական գներով, 102 անգամ ավելի արդյունաբերական արտադրանք կտա, քան 1913 թվականին և 1.246 անգամ ավելի՝ քան 1919 թվականին։

Ծանր արդյունաբերության արտադրանքի ծավալը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճել է մոտ 2,5 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 8,5 անգամ։ Ռեսպուբլիկայում ստեղծված է հզոր էներգետիկ արդյունաբերություն։ Նախառևոլյուցիոն ժամանակի մի քանի խղճուկ էլեկտրակայանների փոխարեն այժմ Հայաստանում գործում են 112 էլեկտրակայան։ Տարեցտարի շարք են մտնում նոր հիդրոէլեկտրակայաններ և ավելանում է էլեկտրաէներգիայի արտադրությունը։ 1955 թվակա-

նին, 1950 թվականի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի արտադրությունը ավելացել է 2,2 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 5,2 անգամ։ Ներկայումս Հայաստանի հիդրոէլեկտրակայանները 320 անգամ ավելի շատ էներգիա են արտադրում, քան 1913 թվականին, կամ ռեսպուբլիկայի էլեկտրակայանները մեկ օրում ավելի շատ էլեկտրաէներգիա են տալիս, քան ամբողջ 1913 թվականին։ Եթե մեր ռեսպուբլիկայում բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնում է տարեկան 1.615 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ապա Ֆրանսիայում ընկնում է 918, Մեծ Բրիտանիայում (առանց Հյուսիսային Իռլանդիայի)՝ 910, Իտալիայում՝ 602 և Իսպանիայում՝ 433 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Կամ մեզանում բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնում է տարեկան 30 անգամ ավելի էլեկտրաէներգիա, քան Թյուրքիայում և 100 անգամ ավելի, քան Իրանում։

Էլեկտրաարդյունաբերության բնագավառում այս մեծ նվաճումների հետ մեկտեղ ուժգին թափով կառուցվում են նոր հզոր հիդրոէլեկտրակայաններ՝ Ձանգու, Դեբեդ գետերի վրա, որոնք ռեսպուբլիկայի բուռն թափով զարգացող արդյունաբերությանը մատակարարելու են էլեկտրաէներգիա։



Ռեսպուբլիկայում արագ տեմպերով է զարգանում ծանր արդյունաբերության սիրտը հանդիսացող մեքենաշինությունը և մասնավանդ էլեկտրամեքենաշինությունը։ Դրանց արտադրանքը վերջին 4 տարում ավելացել է 2,7 անգամ։ 1954 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, մեքենաշինական արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը աճել է 42,3 անգամ։ Մեքենաշինությունը դարձել է ռեսպուբլիկայի արդյունաբերության առաջատար ճյուղերից մեկը։

Մեծ չափով է աճել նաև գունավոր մետալուրգիան, քիմիական, լեռնահանքային արդյունաբերությունը, որոնց զարգացման համար լայն հեռանկարներ կան ռեսպուբլիկայում, և ծանր արդյունաբերության այլ կարևոր ճյուղեր։

Սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի հիմքը հանդիսացող ծանր ինդուստրիայի առավել զարգացմանը զուգընթաց և նրա բազայի վրա մեր ռեսպուբլիկայում ստեղծվել է զարգացած թեթև ու սննդի արդյունաբերություն, որոնք տարեկան տալիս են հարյուրավոր տեսակի արտադրանք։ Միայն սննդի արդյունաբերությունը թողարկում է ավելի քան 400 տեսակի արտադրանք։ Տարեցտարի մեծ չափով աճում է արտադրանքի թողարկումը։

Բավական է նշել, որ վերջին չորս տարվա ընթացքում բրդյա կտորեղենի արտադրությունն ավելացել է 3,6 անգամ, մետաքսյա կտորեղենինը՝ 2,6 անգամ, գորգեղենինը՝ 3,2 անգամ, կոշկեղենինը՝ 1,4 անգամ, պահածոներինը՝ 1,8 անգամ, բուսական յուղի արտադրությունը՝ 1,6 անգամ, շաքարինը՝ մոտ 2 անգամ և այլն։ Իսկ 1940 թվականի համեմատությամբ, 1954 թվականին կաշվի-կոշկեղենի արտադրությունն ավելացել է 3,4 անգամ, տրիկոտաժինը՝ 4,9 անգամ, գորգեղենինը՝ մոտ 5 անգամ, մահճակալներինը՝ 7 անգամ, գուլպայի արտադրությունը՝ ավելի քան 2 անգամ, պահածոներինը՝ 2,3 անգամ, մսինը՝ 1,6 անգամ, երշիկեղենի արտադրությունը՝ մոտ 3 անգամ, կենդանական յուղինը՝ 2 անգամ, պանրինը՝ մոտ 4 անգամ և այլն։ Բրդյա և մետաքսյա կտորեղենի արտադրությունը հիմնականում ստեղծվել է հետպատերազմյան տարիներին։ 1954 թվականին լայն սպառման ապրանքների արդյունաբերության ձեռնարկությունները բաց են թողել 3 միլիոն 650 հազար մետր մետաքսյա և 2 միլիոն մետր բրդյա կտորեղեն։ 1955 թվականի առաջին կիսամյակի ընթացքում Հայկական ՍՍՌ Լայն սպառման արդյունաբերական ապրանքների մինիստրության ձեռ-



նարկությունները պլանից ավելի թողարկել են 15,8 միլիոն ռուբլու արտադրանք։ Վեց ամսում լրացուցիչ արտադրվել է 34 հազար մետր բրդյա, 67 հազար մետր մետաքսյա գործվածք, 37 հազար կտոր տրիկոտաժե վերնազգեստ, 30 հազար զույգ կոշիկ, 31 հազար քառակուսի դեցիմետր փափուկ կաշի, տղամարդու 7.500 կոստյում և այլն։ Այդ նույն ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 4,2 տոկոսով։ Ամբողջ ապրանքային արտադրանքի ինքնարժեքն իջել է 6 միլիոն 184 հազար ռուբլով։

Ռեսպուբլիկայում լայն սպառման ապրանքների արտադրությունը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, կաճի 1,7 անգամ, 1940 թվականի համեմատությամբ՝ 2,9 անգամ։ Չնայած ժողովրդական սպառման ապրանքների արտադրության այսպիսի բարձր աճին, այնուամենայնիվ ներկայումս մեծ ուշադրություն է դարձվում նրանց արտադրության հետագա ծավալմանը, մասնավորապես ասորտիմենտի լայնացմանը և արտադրանքի որակի բարելավմանը։ Այդ նպատակով կառուցվում և վերակառուցվում են թեթև ու սննդի արդյունաբերության մի շարք գործարաններ Երևանում, Լենինա-

կանում, Կիրովականում, Ղափանում և մյուս քաղաքներում։ Առաջիկա երկու տարում պետք է յուրացվի լայն սպառման արդյունաբերական և պարենային ապրանքների ավելի քան 55 նոր տեսակների արտադրությունը։

Ամբողջ արդյունաբերության զարգացման հետ միասին աճել է Սովետական Հայաստանի բանվոր դասակարգը։ Արդյունաբերության մեջ զբաղվող բանվորների թիվը 1954 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է 2,5 անգամ, իսկ յուրաքանչյուր բանվորին ընկնող մոտորային կարողությունը ավելացել է 2,1 անգամ։

Խոշոր հաջողությունների է հասել նաև ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Տարեցտարի ավելանում են գյուղատնտեսության համախառն արտադրանքը, կոլտնտեսությունների և սովխոզների ցանքատարածությունները և նրանց բերքատվությունը, անասունների գլխաքանակն ու մթերատվությունը, ՄՏ կայանների տեխնիկական զինվածությունը և կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների եկամուտները։

Գյուղատնտեսության բնագավառում նշանակալից հաջողություններ են ձեռք բերվել



հատկապես վերջին 2 տարվա ընթացքում, երբ ռեսպուբլիկայի աշխատավորները, ինչպես և ամբողջ սովետական ժողովուրդը, կենսագործում են կոմունիստական պարտիայի պատմական որոշումները սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքի մասին։

Ռեսպուբլիկայի ցանքատարածությունները, 1913 թվականի համեմատությամբ, 1954 թվականին ավելացան 1,4 անգամ, 1919 թվականի համեմատությամբ՝ 5,4 անգամ, այդ թվում տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունները ավելացան համապատասխանաբար 1,7 և 21 անգամ, բանջարանոցային կուլտուրաներինը՝ 2 և 92 անգամ։

Զգալի չափով աճել է կոլտնտեսությունների տնտեսական հզորությունը։ 1954 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, կոլտնտեսությունների դրամական եկամուտները ավելացել են ավելի քան 2,5 անգամ, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ ավելի քան 40 տոկոսով։ Արտադրության հիմնական միջոցներն ու անբաժանելի ֆոնդը 1954 թվականին ավելացել են՝ 1940 թվականի համեմատությամբ 3,7 անգամ, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ 30 տոկոսով։

Այս տարի գերակատարվեց գարնանացան

կուլտուրաների և հատկապես հացահատիկային կուլտուրաների ցանքի պլանը։ Ընդ որում կոլտնտեսությունները ցանեցին ավելի քան 13 հազար հեկտար եգիպտացորեն։ Այս տարի աճեցվեց հացահատիկի, խաղողի, կարտոֆիլի, ճակնդեղի, ծխախոտի և այլ կուլտուրաների լավ բերք, դրանց բերքատվությունը զգալիորեն բարձր եղավ նախորդ տարվա համեմատությամբ և հաջողությամբ կատարվեցին հացահատիկային ու մյուս կուլտուրաների պետական մթերումները։

Սովետական իշխանության տարիներին զգալիորեն ընդարձակվել է ոռոգման ցանցը։ 1954 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ջրովի հողերի տարածությունը ավելացել է մոտ 2,5 անգամ։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության կարևորագույն ճյուղերից է դարձել խաղողագործությունն ու պտղաբուծությունը։ Ներկայումս խաղողի այգիների տարածությունը ավելի քան 4 անգամ շատ է, քան 1913 թվականին։ Խաղողագործությունն ու պտղաբուծությունը մեզանում զարգացման մեծ հեռանկար ունեն։ Ամեն տարի տնկվում են հարյուրավոր հեկտար նոր այգիներ։

Ռեսպուբլիկայի աշխատավորները զգալի հաջողությունների են հասել հանրային ա-



նասնաբուծության ասպարեզում։ 1954 թվականի հոկտեմբերի 1-ից մինչև 1955 թվականի հոկտեմբերի 1-ը, 1953/1954 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կոլտնտեսություններում կաթի արտադրությունը ավելացել է 25,6 տոկոսով։ Այս տնտեսական տարում մեկ ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը հասավ 1096 կիլոգրամի, անցյալ տնտեսական տարվա 943 կիլոգրամի դիմաց։ Անասունների կաթնատվության բարձրացման գործում լավագույն ցուցանիշների են հասել Շահումյանի, Ղուկասյանի, Սևանի, Շամշադինի և մի շարք այլ շրջանների կոլտնտեսությունները։ Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները կաթի ստացման տարեկան պլանը կատարեցին ժամկետից մեկ ամիս շուտ և յուրաքանչյուր կովից միջինը ստացան 2.649 կիլոգրամ կաթ։ Զգալի չափերով աճել է նաև բրդի, մսի, ձվի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը։

Կոլտնտեսությունները հաջող կերպով կատարեցին 1955 թվականի գյուղատնտեսական մթերքների պետական մթերումների պլանը, իսկ շատ կոլտնտեսություններ գերակատարեցին այն։

Զգալի չափով ավելացել է կոլտնտեսությունների, ինչպես նաև կոլտնտեսական-

ների ու բանվոր-ծառայողների անասունների գլխաքանակը։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1954 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, աճել է մոտ 34 տոկոսով, այդ թվում կովերինը՝ ավելի քան 2 անգամ, մանր եղջերավորներինը՝ ավելի քան 2 անգամ, խոզերինը՝ ավելի քան 3 անգամ։

Կոլտնտեսականների խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1954 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճել է մոտ 60 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 29 տոկոսով, մանր եղջերավորներինը՝ ավելի քան 2 անգամ, խոզերինը՝ մոտ 3,5 անգամ։

Միայն այս տնտեսական տարում կոլտնտեսականների անձնական սեփականություն հանդիսացող կովերի գլխաքանակը, անցյալ տարվա համեմատությամբ, ավելացել է մոտ 13 տոկոսով, իսկ ոչխարներինը՝ մոտ 38 տոկոսով։

Անասունները կերով ապահովելու համար, անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի հնձված են բնական խոտհարքներ 28 տոկոսով, ցանովի խոտհարքներ 81 տոկոսով ավելի։ Այս տարի կուտակվել է 66 տոկոսով ավելի սիլոս և 2 անգամ ավելի շատ խոտ, քան անցյալ տարի։



Հայաստանի անասնաբուծությունը հետագա զարգացման լայն հեռանկարներ ունի։ Հունվարյան պլենումի որոշմանը համապատասխան, նախատեսվում է մինչև 1960 թվականը մսի արտադրությունը ավելացնել՝ հասցնելով 56 հազար տոննայի, կաթինը՝ 385 հազար տոննայի, բրդինը՝ 4,3 հազար տոննայի և ձվինը՝ 195 միլիոն հատի։ Այս ծրագրի իրականացման դեպքում, որը ռեալ է, անասնաբուծական մթերքների արտադրությունը յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածության դիմաց կկազմի միս՝ 39 ցենտներ, կաթ՝ 264 ցենտներ, բուրդ՝ 320 կիլոգրամ և ձու (100 հեկտար հացահատիկային կուլտուրաների դիմաց) 63 հազար հատ։ Մեր գյուղատնտեսությունը խոշոր հնարավորություններ ունի այդ առաջադրանքները կատարել ոչ թե 5—6 տարում, այլ 2—3 տարում։ Արդեն բազմաթիվ կոլտնտեսություններ այդպիսի պարտավորություններ են վերցրել։

Սովետական Հայաստանում ներկայումս հաշվվում է 875 կոլտնտեսություն, 46 սովխոզ, 58 ՄՏ կայան։ ՄՏ կայաններում կան հազարավոր տրակտորներ, կոմբայններ և գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Գյուղատնտեսական հիմնական աշխատանքների

մեքենայացմամբ խոշոր չափով թեթևացել է մեր կոլտնտեսականների աշխատանքը և բարձրացել նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակը։ Գյուղատնտեսական մեքենաների թիվը միշտ ավելանում է։ ՄՏ կայանների տրակտորային պարկի հզորությունը 1954 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ մոտ 3 անգամ, այդ նույն ժամանակամիջոցում տրակտորների թիվը ավելացավ ավելի քան 2 անգամ, կոմբայնների թիվը՝ 2,7 անգամ։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների մոտ 95 տոկոսը սպասարկվում են ՄՏ կայանների կողմից։

Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հիանալի նվաճումները ամեն տարի լայնորեն ցուցադրվում են մշտապես գործող Համամիութենական Գյուղատնտեսական Ցուցահանդեսի Հայկական ՍՍՌ-ի պավիլիոնում։ Ցուցահանդեսի այս տարվա 1.261 մասնակիցների մեջ հաշվվում են 32 կոլտնտեսություն, 25 ֆերմա, 8 սովխոզ, 13 գիտահետազոտական ինստիտուտ, 2 ՄՏ կայան, մեկ շրջան (Շահումյանի), 740 կոլտնտեսական, 77 մեխանիզատոր, 89 սովխոզային աշխատող, 35 գիտաշխատող, 92 պատանի բնասեր և այլն։ Այս տարի Երևանում բացվեց



Հայաստանի Գյուղատնտեսական ցուցահանդեսը, ուր ավելի լայնորեն են ներկայացվում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հաջողությունները։

Սովետական երկրի, այդ թվում Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման անշեղ վերելքի հիման վրա բարձրանում է աշխատավորների բարեկեցությունը, որը ընդհանուր է ամբողջ սովետական ժողովրդի համար։ Անընդհատ աճում են բանվոր-ծառայողների ռեալ աշխատավարձը և կոլտնտեսականների եկամուտները։ Դրա շնորհիվ տարեցտարի ավելանում է պետական ու կոոպերատիվ մանրածախ առևտրի շրջանառությունը։ 1954 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայում մանրածախ ապրանքաշրջանառությունը (համեմատական գներով) աճեց ավելի քան 2 անգամ, իսկ 1953 թվականի համեմատությամբ՝ ավելի քան 19 տոկոսով։ 1955 թվականի առաջին կիսամյակի ապրանքաշրջանառության պլանը կատարվեց 102 տոկոսով։

Կոմունիստական պարտիան և կառավարությունը մշտական հոգատարություն են ցուցաբերում աշխատավորների նյութական-կուլտուրական պայմանների և առողջապահու-

թյան բարելավման նկատառմամբ։ Այդ նպատակների համար բյուջետային հատկացումները տարեցտարի ավելանում են։ Միայն 1950—1954 թվականների ընթացքում Հայաստանում բնակարանային շինարարության մեջ ներդրվել է 338 միլիոն ռուբլի, շահագործման է հանձնվել ավելի քան 240 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Քաղաքներում և գյուղերում կառուցվել են 20 հազար անհատական բնակելի տուն, 76 դպրոց, մոտ 500 խանութ և այլն։

Հայաստանի զարգացող արդյունաբերության, գիտության ու կուլտուրայի կենտրոն է դարձել Երևանը, ուր վերջին 4 տարիների ընթացքում կառուցվել և շահագործման է հանձնվել ավելի քան 90 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ 1955 թվականին կառուցվելու է մոտ 39 հազար ք. մ. բնակելի տարածություն, իսկ եկող տարվանից բնակելի շինարարության վրա ներդրվելու են 2 անգամ ավելի միջոցներ, քան անցյալ տարի։

Մեր ռեսպուբլիկայում բնակարանային շինարարությունը, քաղաքների ու գյուղերի բարեկարգումը գնալով է՛լ ավելի է ծավալվում։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերված



աշխատավորների բուժսպասարկման գործում։ 1913 թվականի համեմատությամբ հիվանդանոցների թիվը ավելացել է 12 անգամ, նրանցում եղած մահճակալներինը՝ 51 անգամ, դեղատներինը՝ 11 անգամ։ Եթե 1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 57 բժիշկ, ապա 1954 թվականին բժիշկների թիվը հասավ 3.166-ի կամ ավելացավ մոտ 56 անգամ։ Բուժհիմնարկների քանակը ռեսպուբլիկայում 1940 թվականի համեմատությամբ կրկնապատկվել է, այդ թվում գյուղական վայրերում մոտավորապես եռապատկվել է։ Եթե 1913 թվականին Հայաստանի գյուղական վայրերում ոչ մի բժշկական հիմնարկ չկար, ապա ներկայումս ռեսպուբլիկայի գյուղական բնակչությանը սպասարկում են 126 հիվանդանոց, բազմաթիվ բուժմանկաբարձական կետեր, ծննդատներ և այլ բուժ հիմնարկներ, որտեղ աշխատում են հազարավոր բժիշկներ և այլ բուժ-աշխատողներ։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում կառուցվել են 21 սանատորիա և մի շարք հանգստի տներ։ Ռեսպուբլիկայի, ինչպես և Սովետական Միության մյուս սանատորիաներում ու հանգստի տներում ամեն

տարի բուժվում ու հանգստանում են բազմահազար աշխատավորներ։

Սովետական իշխանությունը բացառիկ հոգատարություն է ցուցաբերում մոր ու մանկան նկատմամբ։ Բազմազավակ մայրերը ստանում են պետական նպաստներ։ Ծննդատներում մահճակալների թիվը 1954 թվականին, 1940 թվականի համեմատությամբ ավելացավ մոտ 2 անգամ, մեծ չափով ավելացավ նաև մանկամսուրների ու մանկապարտեզների և նրանցում ընդգրկված երեխաների թիվը։

Առողջապահության և ժողովրդի այլ կարիքների համար բյուջետային հատկացումները ամեն տարի շատանում են։ Ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքի և բժշկական սպասարկման շնորհիվ տարեցտարի ավելանում է ծննդաբերությունը, պակասում հիվանդությունները և հիվանդություններից առաջ եկող մահացությունները։

Շատ խոշոր են Սովետական Հայաստանի նվաճումները գիտության ու կուլտուրայի զարգացման բնագավառներում։ Միայն սովետական իշխանության օրոք հայ ժողովուրդը հնարավորություն ունեցավ ստեղծել գիտական մտքի կենտրոն՝ Գիտությունների ակադեմիա։ Հայաստանի Գիտությունների



ակադեմիան ունի 30-ից ավելի գիտա-հետազոտական ինստիտուտ և հարյուրավոր գիտական աշխատողներ, որոնք լուծել ու մշակում են տնտեսական ու գիտական արժեքավոր պրոբլեմներ։

Ռեսպուբլիկայում ակադեմիայից բացի, գիտական աշխատանք է տարվում նաև գիտահետազոտական ինստիտուտներում և մյուս ինստիտուտներում։ Հայաստանի գիտնականները կարևոր ավանդ են մտցրել սովետական և նույնիսկ համաշխարհային գիտության մեջ։ Նախասովետական Հայաստանը զուրկ էր որևէ բարձրագույն ուսումնական հաստատությունից, իսկ այժմ գործում են 16 բարձրագույն ուսումնական հաստատություն, այդ թվում՝ 5-ը հեռակա, որոնցում սովորում է ավելի քան 18 հազար ուսանող։ Ռեսպուբլիկան ունի 45 տեխնիկում, ուր սովորում է մոտ 16.000 ուսանող. ԲՈՒՀ-երն ու տեխնիկումները երկրին տալիս են տարեկան հազարավոր մասնագետներ։

Ժողովրդական կրթության մակարդակով Հայաստանը ետ է թողել ամենազարգացած կապիտալիստական երկրներին։ Ներկայումս մեր ռեսպուբլիկայում գործում են 1.187 տարրական, յոթնամյա և միջնակարգ դպ-

րոցներ, անցյալ տարվա 1.148-ի փոխարեն, ուսուցիչների թիվը հասնում է 18.339 հոգու, անցյալ տարվա 16 հազարի փոխարեն, աշակերտների թիվը հասնում է մոտ 300 հազարի։

Հայաստանը ծածկվել է կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ ցանցով։ Ռեսպուբլիկայում այժմ գործում են շրջանային և քաղաքային 52 կուլտուրայի տուն, մոտ հազար գյուղական և քաղաքային ակումբ, 14 թանգարան և տուն-թանգարան, 1.400 գրադարան, 300 շրջիկ կինո, ստացիոնար կինոկետեր և կինոթատրոններ։

Ռադիոն մուտք է գործել ամենահեռավոր գյուղերը։ Ներկայումս հաշվվում է ավելի քան 82.700 ռադիոկետ, 55.300 ռադիոընդունիչ։ Միայն կոլտնտեսային գյուղում ռադիոկետերի թիվը հասնում է 38 հազարի, իսկ ռադիոընդունիչներինը՝ 14 հազարի։ Այժմ գյուղի աշխատավորներն ստանում են ավելի քան 110 հազար օրինակ ամսագիր և թերթ։ Հայաստանն ունի իր օպերան, դրամատիկ թատրոններ, կինոստուդիա և կուլտուրայի այլ օջախներ։

Հայաստանում լայնորեն զարգացել է տպագրությունը։ Տարեկան լույս են տեսնում հարյուրավոր անուն քաղաքական, գեղար-



վեստական և գիտական գրքեր, ամսագրեր և թերթեր՝ բազմամիլիոն տիրաժներով և արագորեն տարածվում ժողովրդի մեջ։

1954 թվականին հրատարակվել է 900 անուն գիրք՝ 6 միլիոն 400 հազար տիրաժով, որը 2,3 անգամ շատ է, քան 1940 թվականին հրատարակված գրքերի տիրաժը։

Մեծ զարգացում է ունեցել սովետահայ արվեստն ու գրականությունը։

Հայաստանի բազմադարյան կուլտուրան ծաղկման հասավ միայն սովետական հասարակարգում։

Հայաստանի աշխատավորները արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի ասպարեզներում այս վիթխարի հաջողությունները ձեռք են բերել սովետական իշխանության շնորհիվ, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության իմաստուն քաղաքականության շնորհիվ։

Հայ ժողովուրդը, Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ միասին նորանոր հաջողությունների կհասնի կոմունիստական շինարարության ասպարեզում։

---

# Ի ՊԱՏԻՎ ՍՄԿՊ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

Ա. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ

Երևանի էլեկտրալուսավորման արմատուրայի գործարանի դիրեկտոր

*Մեր գործարանի կոլեկտիվը արտադրական մեծ վերելքով է դիմավորում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարը։ Գործարանի կոլեկտիվը լուրջ աշխատանք է կատարել ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումները կենսագործելու ուղղությամբ։ Այժմ մեր գործարանը թողարկում է բացառապես ազգաբնակչության կարիքները բավարարող ապրանքներ։ Օրինակ, թխվածքեղենի համար գործարանը արտադրում է «Հրաշք» տիպի էլեկտրադուխովկա, որը տնտեսուհիներին ազատում է կերոսինկայի և սովորական վառարանային պայմաններում թխվածքներ պատրաստելու ծանր ու անմաքուր աշխատանքից։ «ԷԺ—1» տեսակի էլեկտրաեփիչով կարելի է պատրաստել սուպ, ժարկո, կոտլետներ, խորոված և այլ տեսակի ճաշեր։*



*Մեր գործարանը արտադրում է նաև էլեկտրավառարաններ, բազմատեսակ ու տարբեր մեծության լուսամփոփներ և զանազան այլ իրեր, որոնք իրենց արտաքին տեսքով ու որակական բարձր հատկանիշներով բարձր գնահատության են արժանանում սպառողների կողմից։*

*Վերջին ժամանակներս մեծ աշխատանք է տարվում մեր արտադրած առանձին առարկաների կատարելագործման ուղղությամբ։ Շուտով մենք արտադրելու ենք էլեկտրադուխովկա «ԷԴ—2», որը նախորդից տարբերվելու է էլեկտրական հոսանքի երկկողմանի (վերևից և ներքևից) միացման հարմարանքով։ Նոր էլեկտրաեփիչ «ԷԺ—2»-ը բավականին կրճատելու է կերակրի եփման ժամանակը։ Տնային տնտեսուհիների համար պատրաստվում է գեղեցիկ նվեր՝ նոր կոնստրուկցիայի լվացքի մեքենաներ, որոնք իրենց օժանդակ լրացուցիչ հարմարանքներով ավելի կատարյալն են լինելու, քան նրանք, որոնք ներկայումս թողարկվում են մեր Միության տարբեր քաղաքներում։ Լվացքի մեքենաների մասսայական արտադրությունը սկսվելու է 1956 թվականի երկրորդ կեսից։*

*Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի*

որոշման համաձայն գործարանը շուտով պատրաստելու է նաև էլեկտրափամփուշտներ, միացուցիչներ, անջատիչներ, շտեպսելներ և այլ իրեր, որոնցով լիովին ապահովվելու են ռեսպուբլիկայի պահանջները, մի մասն էլ վաճառքի է հանվելու եղբայրական ռեսպուբլիկաներում։ Մեր արտադրանքի շատ տեսակներ մեծ ընդունելություն են գտել և հավանության արժանացել Թբիլիսիի, Բաքվի, Սոչիի, Խարկովի, Կիևի, Ստալինոյի, Կույբիշևի, Տաշքենդի, Սամարղանդի և բազմաթիվ այլ քաղաքների սպառողների կողմից։

Վերջերս մեր գործարանի հասցեով բազմաթիվ նամակներ են ստացվել Մոսկվայից, Լենինգրադից, Ուկրաինայից, Տաշքենդից, Ստալինգրադգէսի աշխատողներից, որով նրանք բարձր գնահատական են տալիս մեր արտադրանքին։

Արտադրանքի որակը բարելավելու և առաջավոր տեխնիկան արմատավորելու նպատակով տարեկան մեկ անգամ կազմակերպում ենք արտադրական էքսկուրսիա դեպի մեր երկրի նույնատիպ առաջավոր գործարանները, նրանց փորձին ծանոթանալու համար։ Տարբեր ժամանակներում մեր բան-



վորները եղել են Մոսկվայի, Լենինգրադի, Ռիգայի և Խարկովի գործարաններում։

Մեր գործարանը հնգամյակով նախատեսված իր արտադրական պլանները կատարել է ժամկետից 15 ամիս շուտ, այսինքն՝ 1954 թվականի սեպտեմբերի 20-ին։ Բացի այդ, գործարանի կոլեկտիվը խոստացել է մինչև հնգամյակի վերջը երկրին տալ տասնյակ միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։

Վերջին 9 ամսում զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, թողարկվող արտադրանքի ինքնարժեքը պլանային 13 տոկոսի փոխարեն իջեցված է 15,4 տոկոսով։ 1946 թվականի երկու ցեխի փոխարեն գործարանը ներկայումս ունի ութ ցեխ։ Եկող տարի բացվելու է ևս երկու նոր ցեխ՝ լվացքի մեքենաների պատրաստման և մետաղապատման ցեխերը։

Տարեց-տարի ավելանում է ռացիոնալիզատորական ու նորարարական առաջարկությունների քանակը։ Եթե անցած չորս տարիների ընթացքում գործարանում կիրառվել է ընդամենը 60 ռացիոնալիզատորական առաջարկություն, որը տվել է 200 հազար ռուբլու խնայողություն, ապա միայն վերջին 8 ամսում արտադրության մեջ ներդրված է

21 առաջարկություն, որից արդեն ստացվել է 180 հազար ռուբլու օգուտ։

Գործարանի կոլեկտիվը ներկայումս մտնելով ՍՄԿՊ-ի 20-րդ համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, պարտավորվել է յուրացնել էլեկտրալուսավորման արմատուրայի արտադրման նորագույն տեխնոլոգիան և մինչև 1955 թվականի վերջը տալ չորս նոր տեսակի լուսամփոփներ, իսկ 1956 թվականին դրանց քանակը հասցնել մինչև 8-ի։ Գործարանում մեծ տեղ է հատկացվում նաև արտադրական առանձին պրոցեսների մեքենայացմանը։ Այժմ մեքենայացվում են հումքի և պատրաստի արտադրանքի տեղափոխման աշխատանքները, կառուցվում է բեռնատար լիֆտ, որի գործարկումից հետո զգալի չափով կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը։ Միաժամանակ լարված աշխատանքներ են գնում գունավոր մետաղները էլեկտրական եղանակով հալելու ուղղությամբ, որը հնարավորություն կտա կիսով չափ կրճատել ձեռքի աշխատանքը և կրկնակի չափով ավելացնել արտադրանքի թողարկումը։

Գործարանի կոլեկտիվը պարտավորվել է 1955 թվականի պլանը կատարել մինչև նո-



յեմբերի 23-ը, պլանից դուրս երկրին տալ հսկայական քանակությամբ արտադրանք։

Բանվորների մասնագիտական պատրաստականությունը բարձրացնելու նպատակով մեզ մոտ գործում է տեխմինիմումի խմբակը, ուր ընդգրկված են 35 հոգի։ Տեխուսուցումը միաժամանակ հնարավորություն է տալիս բանվորներին ավելի ակտիվորեն մասնակցելու ռացիոնալիզատորական աշխատանքներին և այդ ճանապարհով բարձրացնելու թողարկվող արտադրանքի քանակն ու որակը։ Ռացիոնալիզատորական առաջարկություններով հաճախ հանդես են գալիս այն ընկերները, որոնք ժամանակին իրենց որակավորումը ստացել են տեխուսուցման խմբակում։ Բացի այդ, ռացիոնալիզատորների համար գործում են 40-ժամյա դասընթացներ, ուր նրանց ծանոթացնում են արտադրության տնտեսական ու ֆինանսական հիմունքներին։ Հատուկ ուշադրություն է դարձվում նաև բանվոր երիտասարդության ընդհանուր պատրաստականությունը բարձրացնելու վրա։ Երիտասարդ բանվորների մի մասն ընդգրկված է գիշերային տեխնիկումներում իսկ մի մասը՝ բանվորական դպրոցներում։ Առանձին ընկերներ հաճախում են

բարձրագույն ուսումնական հաստատություններ։

Այժմ գործարանի բոլոր ցեխերում ծավալվել է գործարար սոցիալիստական մրցություն՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատվին։ Կ. Նազարյանի, Կ. Շարաբխանյանի, Կ. Տեր-Սերոբյանի, Ա. Խալումյանի, Լ. Բեգլարյանի բրիգադաները ցույց են տալիս աշխատանքի լավագույն օրինակներ, ամսեամիս իրենց արտադրական պլանները կատարելով 120—130 տոկոսով։

Ծավալված սոցիալիստական մրցությանը նոր թափ հաղորդելու համար դիրեկտորական ֆոնդից առանձնացված է հատուկ գումար՝ առաջավորներին պարգևատրելու նպատակով։ Բացի այդ, սահմանված է միջցեխային փոխանցիկ դրոշ, որը ներկայումս գտնվում է լուսամփոփի ցեխի բանվորների ձեռքում։ Վեց հոգի պարգևատրված են Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Պատվոգրով և 11 հոգի Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի ու ՀԱՄԽ-ի պատվոգրերով։

Գործարանի կոլեկտիվը պարտիական կազմակերպության օգնությամբ ու ղեկավարությամբ ուժ չի խնայում արժանավայել դիմավորելու մեր պարտիայի XX համագումարը։

---

## ԱՌԱՋԱՎՈՐ ԲԱՄԲԱԿԱԳՈՐԾՆԵՐԻ ՕՐԻՆԱԿՈՎ

Ա. ՄԿՐՏՉՅԱՆ
ՀԿՊ Հոկտեմբերյանի շրջկոմի քարտուղար

Երկրին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալու գործում վճռական դեր է պատկանում առաջավոր փորձի տարածմանն ու արմատավորմանը։ Այդ ուղղությամբ մեծ աշխատանք է կատարել Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի կոլտնտեսությունը։ Այստեղ մշակվում է 400 հեկտար բամբակ։ Մինչև 1955 թվականը այս կոլտնտեսությունում կար դաշտավարական 12 բրիգադա։ Բոլոր բրիգադաները կոլտնտեսության տարբեր դաշտերից հողակտորներ ունեին։ Այդ հանգամանքը խիստ բացասաբար էր անդրադառնում կոլտնտեսության աշխատանքի կազմակերպման վրա։ Հոկտեմբերցիները Ադրբեջանի և Տաջիկստանի բամբակագործների օրինակով ընթացիկ տարվա վաղ գարնանից խոշորացրին արտադրական բրիգադաները և 12-ի փոխարեն կազմվեց 4 դաշտավարական բրիգադա։

Աշխատանքի այս նոր ձևը լայն հնարավորություններ բացեց բրիգադաններում աշխատանքը ճիշտ կազմակերպելու ու կոնկրետ ղեկավարելու համար։ Բրիգադիրը հնարավորություն ունեցավ ամեն օր չափել ու հաշվել իր բրիգադայի կատարած աշխատանքը, շփվել բոլոր աշխատողների հետ, ստուգել աշխատանքի որակը, ժամանակին տեսնել աշխատանքի առաջավորներին և ետ մնացողներին։

Բացի այս բոլորից, Հոկտեմբերի կոլտնտեսությունը ընթացիկ տարում առաջին անգամ կիրառեց բամբակենու մշակության նոր, քառակուսի-բնային նեղաշար եղանակը. այս աշխատանքը նույնպես տվեց իր հիանալի արդյունքը։

Կոլտնտեսականները սոցիալիստական մրցության մեջ մտնելով Տաջիկական ՍՍՌ Գիսարի շրջանի Խանակին գյուղի Ժդանովի անվան կոլտնտեսության բամբակագործների հետ, այս տարի օգոստոս ամսին այցելեցին իրենց մրցակիցներին, ուսումնասիրեցին նրանց աշխատանքի մեթոդները և շատ բան սովորեցին նրանցից։

Տաջիկիստանի առաջավոր բամբակագործների օրինակով հոկտեմբերցիները այս տարի ուշ ոռոգեցին բամբակենու պլանտացիա-



ները, որի շնորհիվ բամբակենին ունեցավ փարթամորեն զարգացած արմատային սիստեմ։ Դրան հաջորդեցին խորը փխրեցումը ինչպես մեքենայով, այնպես էլ ձեռքով, կատարվեց խոր ծերատում և տրվեց բույսի պահանջի չափով սնուցում։ Հոկտեմբերցիները եկող տարվանից կիրառելու են նաև արտաարմատային սնուցման Տաջիկստանի բամբակագործների աշխատանքի լավագույն մեթոդը, որը 2—3 ցենտներով բարձրանում է բամբակի յուրաքանչյուր հեկտարի բերքը։

Աշխատանքի առաջավոր մեթոդները բոլոր բամբակագործների սեփականությունը դարձնելու համար Հոկտեմբերի պարտիական կազմակերպությունը արդեն դիմել է մի շարք գործնական քայլերի։ Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումից անմիջապես հետո, փետրվար ամսին, քննության առավ առաջավոր փորձի արմատավորման հարցը։ Ագիտատորներին հանձնարարվեց բրիգադաններում զրույցների, զեկուցումների, պատի թերթերի և իլյիչովկաների միջոցով տարածել առաջավոր բամբակագործների փորձը։ Բացի այդ, կոլտնտեսությունում առաջավոր փորձը արմատավորելու նպատակով սիստեմատիկ հրավիրվում են բրիգա-

դային արտադրական խորհրդակցություններ, որտեղ իրենց աշխատանքի դրական փորձի մասին պատմում են առաջավոր բամբակագործները։ Այսպես, օրինակ, բրիգադիր Հ. Հակոբյանը, օղակավարուհի Մ. Ասլանյանը և ուրիշները մի քանի անգամ հանդես են եկել կոլտնտեսականների առջև և պատմել բամբակենին մշակելու իրենց փորձի մասին։ Պարտիական կազմակերպության հանձնարարությամբ ագիտատորները առաջավորների փորձը տարածում են բրիգադաներում և օղակներում։

Առաջավորների փորձը տարածելու համար օգտագործվում են նաև ցուցադրական ագիտացիան, սոցիալիստական մրցության տախտակները, դիագրամաները, պատվոտախտակները և այլն։

Առաջավոր փորձի արմատավորմանը մեծ չափով օգնում են նաև կոլտնտեսականների համար մասնագիտական թեմաներով կարդացված զեկուցումները, ուր գիտության նվաճումները շաղկապվում են արտադրական պրակտիկ աշխատանքի հետ։ Միայն վերջին երեք ամսվա ընթացքում կոլտնտեսականների համար գյուղատնտեսական թեմաներով կարդացվել է ավելի քան 13 զեկուցում։ Օրինակ, «Բերքատվության բարձ-



րացման ուղիների մասին» թեմայով զեկուցում է կարդացել գյուղատնտեսական գիտությունների դոկտոր Հ. Թումանյանը և ուրիշ մասնագետներ։

Կոլտնտեսությունում ստեղծված է գյուղատնտեսական կուլտուրայի տուն, որտեղ ցուցադրվում են գյուղատնտեսության առաջավորների կողմից մշակվող կուլտուրաներից լավագույն նմուշներ, պարզաբանվում են այդ առաջավորների աշխատանքի ձևերն ու մեթոդները։

— Մեզ մոտ 100 կիլոգրամ բամբակ հավաքելը դա բոլորիս պարտականությունն է, իսկ կոլտնտեսականներ էլ ունենք, որոնք օրական հավաքում են 200—250 կիլոգրամ, — հայտարարում է կոլտնտեսության նախագահ ընկ. Ա. Սահակյանը։ Եվ իրոք, եթե անցյալ տարի Զ. Մայորյանը հավաքում էր 100—120 կիլոգրամ բամբակ, այս տարի նա 200 կիլոգրամից պակաս չի հավաքում։ Առաջավոր ջանաքավորներ Մ. Ասլանյանը, Հ. Սմբատյանը, Ռ. Հարությունյանը և ուրիշներ սեզոնի ընթացքում արդեն հավաքել են 3.900—4.000 կիլոգրամ բամբակ, օրվա առաջադրանքները կատարելով 300—350 տոկոսով։ Կոլտնտեսությունը մինչև հոկտեմբերի 15-ը բամբակի հանձնման տարեկան

պլանը կատարել է 85 տոկոսով։ Հոկտեմբերցիները պարտավորվել են մինչև սեզոնի վերջը 150 տոկոսով կատարել բամբակի մթերման տարեկան պլանը՝ յուրաքանչյուր հեկտարից մթերակայան հանձնելով 38 ցենտներ բամբակ։

Հոկտեմբերցիների աշխատանքի փորձը շրջանի պարտիական կազմակերպությունը ընդհանրացնում և տարածում է բոլոր կոլտնտեսություններում։ Նրանց օրինակով շրջանի մյուս կոլտնտեսությունների բամբակագործները պայքարում են անկորուստ հավաքել բամբակի մինչև վերջին փաթիլը և հարազատ պետությանը հանձնել ավելի շատ բամբակ։

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

# ԿԻՊՐՈՍ

(Տեղեկանք)

Կիպրոս կղզին գտնվում է Միջերկրական ծովի արևելյան մասում։ Նրա երկարությունը 225 կիլոմետր է, իսկ միջին լայնությունը՝ 60 կիլոմետր։ Կիպրոսի տերիտորիան հավասար է 9251 քառակուսի կիլոմետրի, որի բնակչության թիվը հասնում է ավելի քան 500 հազարի։ Ազգաբնակչությունը հիմնականում կազմում են հույները (400 հազար) և թյուրքերը (90 հազար)։ Կիպրոսը գտնվելով Միջերկրական ծովի արևելյան մասի կենտրոնում, մոտ է Թյուրքիայի, Լիբանանի և Սիրիայի ափերին և հանդիսանում է Սուեզի ջրանցքի բանալին։ Կիպրոսի վրայով է անցնում Եվրոպա-Մերձավոր Արևելք տանող օդային կարևոր գիծը։ Կիպրոսի ստրատեգիական դիրքը միշտ էլ իր վրա է կենտրոնացրել օտարերկրյա զավթիչների ուշադրությունը։

Կիպրոսը պատմականորեն եղել է հունական կղզի (3000 տարի)։ 1571 թվականին Թյուրքիան բռնի կերպով գրավում է Կիպրո-

սը և 300 տարի իր ձեռքում պահելուց հետո, 1878 թվականին այն «ժամանակավորապես» վարձով հանձնում է Անգլիային։ Անգլիան այդ ժամանակվանից Կիպրոսը պահում է իր ձեռքում, և այնտեղ գնալով ավելի ամրապընդելով իր դիրքերը, 1925 թվականին ձևականորեն Կիպրոսը հայտարարում է բրիտանական գաղութ և նրա ղեկավարությունը հանձնում անգլիական նահանգապետին։

Կիպրոսի բնակչությունը միշտ էլ պայքարել է անգլիական գաղութարարների լծից ազատվելու համար։ Սակայն ազատագրական այդ պայքարում բնակչությունը բաժանված է երկու մասի՝ հույները պահանջում-են միանալ Հունաստանին, իսկ թյուրքերը՝ Թյուրքիային։ Անգլիական տիրող շրջանները օգտվելով բնակչության մեջ եղած հակասությունից, Կիպրոսը պահում են իրենց իշխանության տակ և այն դարձրել են իրենց հիմնական ռազմական բազան։

1951 թվականի հունվարի 15-ին Կիպրոսում անցկացվեց հանրաքվե՝ Հունաստանին միավորելու համար։ Այդ քվեարկության համար ցուցակագրած 224 հազար 747 մարդուց քվեարկությանը մասնակցեց 215 հազար 108 մարդ։

Հունական կառավարությունը, հաշվի առ-



նելով իր հայրենակիցների ցանկությունը, 1954 թվականի դեկտեմբերին Կիպրոսի հարցը մտցնում է ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի 9-րդ սեսիայի քննարկմանը։ Անգլո-ամերիկյան բլոկը խանգարում է քննարկել այդ հարցը։

Կիպրոսի բնակչության մեջ սկսվում են հուզումներ և ազգային-ազատագրական շարժում, որը խիստ անհանգստություն է պատճառում անգլիական տիրող շրջաններին։

1955 թվականի սեպտեմբերին, հունական կառավարության դելեգացիան կրկին Կիպրոսի հարցը մտցնում է ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի 10-րդ սեսիայի քննարկմանը։ Սակայն այս անգամ էլ անգլո-ամերիկյան մեծամասնությունը դեմ է դուրս գալիս և խանգարում Կիպրոսի հարցի լուծումը։ ՍՍՌՄ դելեգացիան, ելնելով ՄԱԿ-ի Կանոնադրության պահանջներից, կողմնակից է և պահանջում է, որպեսզի քննարկվի ու լուծվի Կիպրոսի ազատասեր ժողովրդի պահանջը։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. *ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆ 35-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ի՞նչ է Սովետական իշխանությունը, *երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Կեցցե՜ Սովետական Հայաստանը, *երկեր, հատոր 4, էջ 458—459, Հայպետհրատ, 1948։*

Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին։ *ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը՝ ընդունված 1955 թվականի հուլիսի 11-ին ընկ. Ն. Ա. Բուլգանինի զեկուցման առթիվ։ Հայպետհրատ, 1955։*

Լ. Մ. ԿԱԳԱՆՈՎԻՉԻ զեկուցումը Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1955 թվականի նոյեմբերի 6-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 7-ի համարում։*



## 2. *1905—1907 Թ. Թ. ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ռևոլյուցիան Ռուսաստանում, ռևոլյուցիայի սկիզբը Ռուսաստանում, ռևոլյուցիոն օրեր, Առաջին դասերը, *երկեր, հատոր 8, էջ 71—72, 105—109, 111—139, 160—166, Հայպետհրատ, 1949։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ռևոլյուցիան և կոնտրռևոլյուցիան, *Երկեր, հատոր 13, էջ 132—141, Հայպետհրատ, 1950*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ռևոլյուցիայի դասերը, *երկեր, հատոր 16, Հայպետհրատ, 1950։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ 1905 թվականի դեկտեմբերյան ապստամբության տարեդարձին նվիրված միտինգում, *երկեր, հատոր 30, էջ 346—353, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Բոլոր բանվորներին, Երկու ընդհարում, Արդի մոմենտը և բանվորական պարտիայի միավորիչ համագումարը, *հատոր 1, էջ 214—222, 282—311, Հայպետհրատ, 1946։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 50 տարին *(1903—1953)։*

Ռուսական ռևոլյուցիայի 50 տարին *(ՍՄԿԿ Կենտկոմին կից Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի ինստիտուտի թեզիսները)։ Առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1955։*

### 3. ՀՐԵՏԱՆՈՒ ՕՐԸ

### 4. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅՈՒՆՆ ԱՊԱՀՈՎԵԼՈՒ ՀԱՄԱՐ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Լ. Մ. ԿԱԳԱՆՈՎԻՉԻ զեկուցումը Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1955 թվականի նոյեմբերի 6-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Չորս տերությունների կառավարությունների ղեկավարների Ժնևի խորհրդակցության արդյունքները: *Զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Երրորդ սեսիայում 1955 թ. օգոստոսի 4-ին, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի օգոստոսի 5-ի համարում։*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ Հայտարարությունը Չորս տերությունների արտաքին Գործերի մինիստրների Ժնևի խորհրդակցությունում *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հոկտեմբերի 29-ի համարում։*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ Հայտարարությունը Չորս տերությունների արտաքին գործերի մինիստրների Ժնևի խորհրդակցությունում՝ Եվրոպայի անվտանգության հարցի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի նոյեմբերի 1-ի համարում։*



Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության համաեվրոպական պայմանագիր (հիմնական սկզբունքներ)։ ՍՍՌՄ դելեգացիայի առաջարկը Չորս տերությունների արտաքին գործերի մինիստրների Ժնևի խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի նոյեմբերի 1-ի համարում։*

Հանուն միջազգային լարվածության հետագա թուլացման, *«Պրավդա»-ի հոկտեմբերի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի սեպտեմբերի 19-ի համարում։*

ՍՄԿԿ Կենտկոմի կոչերը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 38-րդ տարեդարձի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հոկտեմբերի 25-ի համարում։*

### 5. ԼՐԻՎ ԿԱՐՈՂՈՒԹՅԱՄԲ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ, ԱՆԸՆԴՀԱՏ ԱՎԵԼԱՑՆԵՆՔ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԹՈՂԱՐԿՈՒՄԸ ԵՎ ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ՆՐԱ ՈՐԱԿԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին: *Զեկուցում ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենու-*

*մում 1955 թվականի հուլիսի 4-ին, Հայպետհրատ, 1955։*

Դեպի Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարը, *«Պրավդա»-ի հուլիսի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 19-ի համարում։*

ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 38-րդ տարեդարձի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հոկտեմբերի 25-ի համարում։*

Կոնկրետ, օպերատիվ կերպով ղեկավարել արդյունաբերությունը, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի հոկտեմբերի 20-ի համարում։*

## *6. ԼԱՅՆՈՐԵՆ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԴՐԱԿԱՆ ՓՈՐՁԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին։ *ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ ընդունված 1955 թվականի հուլիսի 11-ին ընկ. Ն. Ա. Բուլգանինի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1955։*

ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը Հոկտեմբերյան Սոցիալիս-



տական Մեծ ռևոլյուցիայի 38-րդ տարեդարձի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հոկտեմբերի 25-ի համարում։*

Ռեսպուբլիկայի արդյունաբերության հետագա վերելքի համար, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի օգոստոսի 29-ի համարում։*

## *7. ԱՊԱՀՈՎԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԽՆԱՄՔԸ ՄՍՈՒՐԱՅԻՆ ՇՐՋԱՆՈՒՄ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնաբուծական մթերքների արտադրությունը ավելացնելու մասին։ *Զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին։ Հայպետհրատ, 1955։*

ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 38-րդ տարեդարձի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հոկտեմբերի 25-ի համարում։*

Լավ նախապատրաստել անասունների ձմեռումը. *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի հոկտեմբերի 11-ի համարում։*

Օրինակելիորեն նախապատրաստել անասունների ձմռան-մսուրային շրջանը, *«Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի առաջնորդողը՝ տպագրված № 10-ում։*

## 8. ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԲԱՐՁՐ ՈՐԱԿՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՏՐԱԿՏՈՐՆԵՐԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄՅՈՒՍ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՈՒ ԳՈՐԾԻՔՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄՆԵՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Մեքենատրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին: *ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը: Հայպետհրատ, 1953:*

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի հրավիրած ՄՏԿ-ների աշխատողների համամիութենական խորհրդակցության մասնակիցների ԴԻՄՈՒՄԸ Սովետական Միության մեքենա-տրակտորային կայանների բոլոր բանվորներին, մասնագետներին և ծառայողներին, տպագրված *«Ս. Հ.»-ի 1954 թվականի հունվարի 30-ի համարում:*

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ստ. Շահումյան— *Երկեր, հատոր I, Հայպետհրատ, 1955 թ., տիրաժ 10.000, գինը 5 ռ. 40 կոպ.:*

Մեր մեծ Հայրենիքը *(Ծավալուն նյութեր Սովետական Միության 16 ռեսպուբլիկաների պատմա-աշխարհագրական կազմության վերաբերյալ), Հայպետհրատ, 1955 թ., տիրաժ 5.000, գինը՝ 11 ռ. 95 կոպ.:*

Խ. Ախմեշտին— *Պետական գաղտնիքի պահպանումը սովետական քաղաքացիների պարտքն է: Հայպետհրատ, 1955 թ., տիրաժ 3.000, գինը՝ 75 կոպ.:*

Ս. Հարությունյան— *Սովետական առևտուրը որպես անձնական սպառման առարկաների բաշխման հիմնական ձև: Հայկական ՍՍՌ քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության հրատարակություն, 1955 թ., տիրաժ 3.000, գինը 75 կոպ.:*

Գ. Տրոպոլսկի— *Պրոխոր տասնյոթերորդը և ուրիշներ: Վիպակ, Հայպետհրատ, 1955 թ., տիրաժ 5.000, գինը՝ 3 ռ. 90 կոպ.:*

Էդ. Ջրբաշյան— *Պոեմի ժանրը սովետահայ գրականության մեջ: Երևանի պետական համալսարանի հրատարակություն, 1955 թ., տիրաժ 4.000, գինը 7 ռուբլի:*

Շիրվանզադե— *Վարդան Անրումյան։ Վիպակ, Հայպետհրատ, 1955 թ., տիրաժ 10.000, գինը՝ 2 ռ. 45 կոպ.։*

Սիմակ— *Հասկեր (պատմվածքներ)։ Հայպետհրատ, 1955 թ., տիրաժ 10.000, գինը՝ 2 ռ. 80 կոպ.։*

Հենրիկ Թումանյան— *Հայրենի վտակ (բանաստեղծություններ)։ Հայպետհրատ, 1955 թ., տիրաժ 3.000, գինը՝ 2 ռ. 50 կոպ.։*

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ


ՎՐԻՊԱԿ

*4-րդ էջի ներքևից վերև 7-րդ տողը կարդալ՝ 1913 թվականին և այնուհետև, ինչպես տեքստում։*

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 21** **1955 г.**

*ՎՖ 13092* *Պատվեր 954* *Տիրաժ 8570*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*